# ՅՈՒՆՈՒԱՐ 17Ի ՄԵԾ ԱՆԱԿՆԿԱԼԸ...



IMPRIMERIE - MASSIS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

# ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ

*Յունուար 17ին* **MUTUALITÉ***ի սրահին մէջ* — *կը կազմակերպէ գեղարուեստական հանդէս մը*




IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN


## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան կոմիտէի դասախօսական ժողովը, այս Շաբաթ իրիկուն Ակումբին մէջ, կը խօսի՝ ընկ. *ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ:*

*ՇԱՎԻԼԻ Արդութեան խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.ին,* 20 Ave. Ville d'Avray, *Շավիլ: Կը խօսի ընկ. Կ. Սասունի, նիւթ՝* Հայոց դատը եւ հայ քաղաքական կուսակցութիւնները: *Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:*

*ԳԱՒԱՌ*

ՏԷՍԻՆԻ Պատ. միութեան գրական-վիճաբանական ժողովը վաղը իրիկուն ժամը 7ին, քաֆէ Տըլափէի մէջ, ընթերցում Ա. Ահարոնեանի գործերէն եւ զրոյց, կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

ԼԻՈՆԻ Մազպերտ խումբի ժողովը այսօր հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին գրադարանի սրահը, 262 RueDuguesclin, կարեւոր օրակարգ, պարտաւորիչ ներկայութիւն:

ՊՕՄՈՆ ՍԷՆ ժիւլիէնի Զաւարեան խումբի ժողովը այս կիրակի իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է, բացակաները նկատի պիտի առնուին:

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ կորիւն, Աւագ-Առիւծ եւ Պօղոս Սայտօ խումբերը այս կիրակի ժամը 2ին, սովորական հաւաքատեղիին մէջ, խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը վաղը ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Ակումբին մէջ, 262 Rue Duguesclin. բոլոր ընկերներուներկայութիւնըպարտաւորիչ է:

ԼԻՈՆ ԿԱՐ ՏԸ ՎԵԶԻ Անդրանիկ խումբի ժողովը այս կիրա, կի կէսօրէն վերջ ժամը 2ին ցովհ. Տօնոեանին տան մէջ, ներկայ պիտի ըլլայ կոմիտէին ներկայացուցիչը:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսութիւնը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Միւթիւալիթէի մէջ* Salle S, *նիւթ՝* Հայ որբերը եւ որբային կազմակերպութիւնները կովկասի մէջ *երէկ եւ այսօր: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (112)

## ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

### ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԵՐԸ

#### 4.— ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ ԿՈՄԻՏԷՃԻՆԵՐՈՒ ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԻՒՆԸ

*Այդ օրն ու յաջորդ օրը պահականոց առաջնորդուեցան բազմաթիւ Հայեր, որոնք կասկածելի կը համարուէին, կամ դէպքէն տեղեակ կամ ոճիրին ականատես կը կարծուէին: Ձերբակալուեցաւ նոյնպէս Քամփանա Սարգիսին որդեգիրը, Կարապետ, այլ անուամբ Արշակ, որ աշկերտութիւն կ՚ընէր Սարգիսի մօտ:*

*Կարապետի հարցաքննութիւնը կատարուեցաւ այսպէս.*

*— Դո՞ւն զարկիր Սեդրաքը:*

*— Սեդրա՞ք ըսիք, այդպիսի մարդ չեմ ճանչնար եւ մա՛րդ ալ չեմ զարկած:*

*— Այն ատեն ըսէ թէ ո՛ւր կը գտնուէիր ուրբաթ իրիկուն ժամը 3ին:*

*— Ուրբաթ ժամը 6էն ետքը, բարեկամիս հաւկթավաճառ Ավրամին հետ գացինք Սարը Եօրկիին երկրորդ գինետունը: Մինչեւ ժամը 8,30 կամ 9ին օղի խմեցինք այնտեղ: Յետոյ «լաթէրնա» մը վարձելով գացինք Եասայիին գինետունը: Ժամը 10.30ին մեկնեցանք այդտեղէն, եւ ես գացի Համամ փողոցը բարեկամուհիիս՝ Օլկայի տունը: Քիչ մը շատ փախցուցեր էի: Գիշերը ժամը 3,30ի ատենները արթնցայ: Տաքութիւն ունէի եւ կ՚այրէի կարծես: Ուզելով քանի մը լեմոն գնել եւ լեմոնատ մը շինել, փողոց իջայ: Տրջիկ ոստիկանները ձերբակալեցին զիս: Վոյվոտայի կեդրոնը տարին: Յաջորդ առաւօտ ոստիկանապետ Շէմսէտտին էֆէնտի ազատ արձակեց զիս և Սարգիսին սրճարանը գացի: Կիրակի առաւօտ կանչեցին Բերայի ոստիկանական պահականոցէն ու արգելափակեցին զիս:*

*— Աղէկ, սակայն ի՞նչ բանալիներ էին, որ գտնուեցան վրադ: Սա տարօրինակ բանալին ո՞ր դրամարկղին կը պատկանի: Ի՞նչ զարմանալի բանալի է այս:*

*— Էֆէնտիս, այս բանալին չորս ամիս առաջ ինծի տուաւ Մարիքան որ Նիւքսէք Գալըրըմի վրայ, Խրիսթոյի հանրատան դրամադլուխը կը համարուի: Ժամբէն զատ էր:*

*— Ուրեմն չես ճանչնար Սեդրաքը, եւ դուն չես սպանիչը:*

*— Ամենեւին, Աստուած չցուցնէ:*

*Կանչուեցաւ Քամփանա Սարգիսը եւ երես երեսի բերուեցաւ Կարապետի հետ:*

*— Կը ճանչնաս այս տղան, չէ՞: Քու աշկերտդ է եղեր:*

*Քամփանա Սարգիս սկսաւ կակազել:*

*— Ո՞վ, այս... երիտասարդը՞...: Չէ, չեմ ճանչնար: Ո՞վ է այս մարդը:*

*— Ի՞նչ օգուտ ունի ուրանալը, ան արդէն խոստովանեցաւ ամէն բան:*

*Քամփանա Սարգիս բարկութեամբ նայեցաւ Կարապետի երեսը: Կարծես ըսել ուզեր. «Ուրեմն դուն խոստովանեցար, հա՞, լաւ, ես ալ ճշմարտութիւնը ըսեմ եւ դուն ալ տես»: Եւ դառնալով հարցաքննիչ ոստիկանապետին, ըսաւ.*

*— Կը ներես, պէյզատէ, կը ճանչնամ: Կը ճանչնամ այս մարդը: Ես հաւատարիմ ծառան եմ այս երկրին: Սուտը ի՛նչ է, չեմ գիտեր: Շիտակ պիտի խօսիմ:*

*— Շատ մի երկնցներ, եւ պատմէ: Ով որ ճշմարիտ կը խօսի, չի գղջար ետքէն:*

*— Ճշմարիտ պիտի խօսիմ, պէյզատէ: Այս աւանակին աւանակը, որ Կարապետ կը կոչուի, 12 տարիէ ի վեր որդեգրած եմ: Հարազատ զաւկէս աւելի սիրած եմ զինք: Սակայն տարիէ մը ի վեր մոլորեցաւ եւ կոմիտէճիներուն սկսաւ յաճախել: Կոմիտէճիներուն մէջ կատաղի մէկը կայ, ո՞վ է, գիտե՞ս...:*

*— Ի՞նչ գիտնամ, բոլորն ալ կատղած են: Ո՞վ է այդ ըսածդ:*

*— Ղալաթիոյ Հայոց եկեղեցիին բարապանը, Վարդանը չկա՞յ...*

*— Այո՛, այո՛, նշանաւոր Վարդան փէտային...*

*— Այո՛, ճիշդ այդ փէտային, պէյզատէս, իմ այս հոգեզաւկս սրտակից բարեկամը դարձաւ անոր: Ամէն օր յանկարծ, ֆը՛րթ, խոյս կուտայ խանութէն, պահ մը կը կորսուի, անոնց մօտ կ՚երթայ: Կ՚երթամ, կը տեսնեմ, որ քաշուած գինետան մը մէջ կամ անձայն սրճարանի մը անկիւնը՝ շշնջելով կը խորհրդակցին: Կը կանչեմ մեր անառակը ու կ՚ըսեմ. «Տղա՛ս, լաւ ընթացք չէ այս, եկ դարձիր այդ ճամբէն, եկուր խանութս հանգիստ նստէ», ու կը յորդորեմ, կը յորդորեմ, մինչեւ որ մազ բուսաւ լեզուիս վրայ: Վերջապէս, մայիս 10ին, ուրբաթ ժամը 4.30ի ատենները Վարդան մեր խանութը եկաւ: Կանչեց Կարապետը: Կէս ժամ գաղտնի խօսակցեցան: Վարդան մեկնեցաւ: Տղը նստեցուցի մերինը. «Տղա՛ս, վերջը կը դղջաս, մի խօսիր այդ կոմիտէճիներուն հետ, պատիժը կը գտնես ետքէն»: Ձկրցայ համոզել, պէյզատէ: Մէկուկէս ժամ ետքը կորսուեցաւ նորէն: Գիշերը ժամը 3ին, 3.30ին ատենները վերադարձաւ գինով: Հասկցայ:*

*Քամփանա Սարգիսի հարցաքննութենէն յետոյ, կանչուեցաւ հաւկթավաճառ Ավրամը: Այս մարդը, համաձայն իր յայտարարութեան, ուրբաթ օր կը շրջէր Սկիւտար, Պէշիկթաշ ու Բերա, հաւաքելու համար իր առնելիքները: Իրիկուան դէմ կը մտնէ Սարը Եօրկիի գինետունը, գանձելու համար 15 դրշ. պարտքը: Յետոյ ոտքի վրայ երկու գաւաթ օղի կը պարպէ ու կը վերադառնայ իր տունը: Բնաւ չի ճանչնար կարապետը, չէ տեսած գինետան մէջ եւ ուրիշ ոչ մէկ գինետան մէջ օղի չէ խմած հետը:*

(Շար.)

դէմ դաւաճանած պիտի ըլլան։ Ելէք եւ սկսեցէք այս բարեպատեհ գործին։ Ուտեստեղէն, հագուստ եւ զէնք, ամէն կերպով ապահովուած են։ Մեր ուժերը բաւական են ամէն բան ընելու։»

Այսպէս բռին մեզի եւ մենք ալ առանց մտածելու եւ առանց գալիքը նկատի առնելու, խաբուեցանք այս խօսքերէն։ Թէեւ վերջը հասկցանք թէ որո՞նք մեր գլխուն այս փորձանքը բացած էին, սակայն ի՞նչ օգուտ գործը գործէն անցած էր։ Գիւղերը պարպուած էին եւ կարաւանները դէպի Կովկաս ճամբայ ելած։

Մեր առաջին ընդհարումը տեղի ունեցաւ սահմանի բանակին հետ, Սպաներէն եւ զինուորներէն քանի մը հոգի նահատակուեցան։ Իսկ մեր մեռեալներուն թիւը աւելի շատ էր։ Թէեւ ուզեցինք փախչիլ, ցրուիլ, սակայն թէ մեր ետեւէն եւ թէ մեր առջեւէն կը կրակէին։ Բազմաթիւ էին անոնք որ կը փափաքէին անձնատուր ըլլալ։ Վերջապէս Սալիհ փաշայի բանակը պաշարեց մեզի եւ այլեւս ետ փախչելու կարելիութիւն ալ չմնաց։ Օրերով անօթի ծարաւ Արարատի վրայ մնացինք։ Ոչ ուտելիք կար ոչ ալ խմելիք։ Օդանաւերուն, թնդանօթներու արձակած ռումբերուն տակ պիտի հալէինք։ Զինուորները եկան եւ խումբ խումբ ժողուեցին մեզի։

Ապստամբները պատասխանելով իրենց եղած հարցումի մը թէ ո՞վ մղած է զիրենք այս շարժումին, ըսած են.— Նախապէս չէինք գիտեր թէ որոնք են մեր դրդիչները։ Յետոյ հասկցանք թէ Հալէպի մէջ Քիւրտերու «Հօյպուն» միութիւն մը կայ եղեր եւ ատիկա ալ Պարսկաստանի մէջ մասնաճիւղ մը ունի եղեր։ Այս քօմիթէին անդամները Հայերու հետ ձեռք ձեռքի տուած ըմբոստական շարժումը կազմակերպեցին եւ մղեցին մեզի որ Հանրապետութիւնը տապալելու փորձ ընենք։

Այս կարգի ուրիշ հարցումներ եւս ուղղուած են հրոսակներուն, որոնք զանազան պատասխաններ տուած են։

## Չինաստանի ուսանողներու սպառնալիքը

*Չինաստանի հանրապետութեան նախագահը Չանկ-Քայ-Չէք որ հրաժարելէ վերջ, ետ առեր էր իր հրաժարականը, կրկին հրաժարեցաւ, այս անգամ սակայն 50,000 ուսանողներու սպառնալիքին տակ։*

*Մէկ քանի օրէ ի վեր, զանազան երկիրներէ դէպի Նանքին կը խուժէին բազմաթիւ ուսանողներ, որոնք թիւով մօտ 50.000 յարձակեցան արտաքին նախարարութեան շէնքին վրայ, աւրեցին գրասենեակները եւ խոշտանգեցին բարձրաստիճան պաշտօնատարներ։*

*Ոստիկաններու հետ բախումներու ընթացքին, 50ի չափ ուսանողներ վիրաւորուած կամ սպաննուած են։*









### ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Վասպ. Հայր. միութեան նորակազմ «Արծիւ» ֆանֆարին, ղեկավարութեամբ Պ. Ժ. ԽՏԻԿԵԱՆի։*

*Այս Կիրակի ժամը 5ին Սինէմա Նուվէլթիի մէջ։*

*32 հոգի բեմի վրայ։ Նոյն օրը ժամը 4ին տողանցք Սօսիէթէ Լիոնէզէն մինչեւ հանդիսավայր։*

*Մուտք 4 եւ 3 ֆրանք*

**Փարիզի Հայ Գրական Ակումբ** *վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին* 131 rue Cambronne, Métro Vaugirard, *տեղի կ'ունենայ Պ. Լ.* Բաշալեանի զեկոյցը «Արփիար Արփիարեանի կեանքն ու գործը».

*Մուտքը ազատ է։*



«ՊԱՐԱՍԷՐՆԵՐՈՒ ՕՐԸ»

## ՏԱՍԸ ՖՐԱՆՔՈՎ ՏԱՍԸ ԺԱՄ ԺԱՄԱՆՑ

Mutualitéի սրահին մէջ, 24 Rue St. Victor մէթրօ՝ Mutualité

ՊԱՐԱՍԷՐՆԵ՛Ր, ՎԱՂԸ ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ ՏՕՆԵՑԷՔ ՁԵՐ ՍԵՓԱԿԱՆ ՕՐԸ

*Պիտի վայելէք մինչեւ առաւօտ պարի ու երաժշտութեան հաճոյքը։ Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի յայտնի դերասանները։ Ապահովեցէք ձեր տոմսակը նախօրօք։*




IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN


## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ՄՈՒԼԻՆՈՑԻ Զաւարեան կոմիտէի դասախօսական ժողովը, վաղը Շաբաթ իրիկուն Ակումբին մէջ։ կը խօսի' ընկ. *ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ։*

*ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Հայ Ակումբին մէջ։*

*ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.ին*, 20 Ave. Ville d'Avray, *Շավիլ։ Կը խօսի ընկ. Կ. Սասունի, նիւթ'* Հայոց դատը եւ հայ քաղաքական կուսակցութիւնները: *Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։*

*ԳԱՒԱՌ*

ՏԷՍԻՆԻ Պատ. միութեան Գրական-վիճաբանական ժողովը վաղը իրիկուն ժամը 7ին, Քաֆէ Տը լա Փէի մէջ, ընթերցում Ա. Ահարոնեանի գործերէն եւ զրոյց, կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

ՊՕՄՈՆ ՍԷՆ Ժիւլիէնի Զաւարեան խումբի ժողովը այս կիրակի իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Բացակաները նկատի պիտի առնուին:

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ կորիւն, Աւագ-Առիւծ եւ Պօղոս Սայտօ խումբերը այս կիրակի ժամը 2ին, սովորական հաւաքատեղիին մէջ, խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԼԻՈՆԻ կուկունեան խումբի ժողովը այսօր ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, Հ. Յ Դ. Ակումբին մէջ, 262 Rue Duguesclin. բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԼԻՈՆ ԿԱՐ ՏԸ ՎԷԶԻ Անդրանիկ խումբի ժողովը այս կիրակի կէսօրէն վերջ ժամը 2ին ցովհ. Տօնոեանի տան մէջ, ներկայ պիտի ըլլայ կոմիտէին ներկայացուցիչը:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*ՄՈՆԹՐԷՕՅԼ-Վէնսանի բոլոր հայրենակիցները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այսօր Ուրբաթ գիշեր ժամը 8.30ին* 8 Ave. de Paris, Vincennes.

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Յակոբ Աղամեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի որդւոյն եւ ազգականին' ԵԴՈՒԱՐԴ ԱԴԱՄԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ։*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկ. Վարդան Գաբաեան շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ եւ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց քեռորդւոյն ԵՐՈՒԱՆԴ ԳԱՍՊԱՐԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ։*



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուին Խարբերդի Աշուան գիւղէն Արամ եւ Տաճատ Յակոբեանները, իրենց մօր անուն՝ Սարա, հօր անուն՝ Մանուկ։ Տարագրութեան միջոցին մայրերնին մեռած է եւ իրենք մնացած են Հալէպի եւ Ուրֆայի շրջանակին մէջ գտնուող Սարուճ գիւղը:*

*Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իրենց հօրեղբօր Պ. Յակոբեանի,* 14 Rue Ortolan, Paris. *Ճշգրիտ լուր տուողին* 500 *ֆրանք եւ մէկ տարեկան «Յառաջ» նուէր։*

*Կը խնդրուի սուրիահայ թերթերէն արտատպել։*

*— Տիկ. Մարի Գասպարեան կը փնտռէ իր քեռորդին Կարապետ Չալմեան, որ 4 տարի առաջ կը գտնուէր Լիփազմա, Փիրէ, Յունաստան, իմացնել* Marie Gasparian*ի*, Chemin des Cerisiers, Ecully, Rhône, France.

— Իսթէլիի Հայր. միութիւնը կը փնտռէ Աբինէր Սարգիսեան, Աղեկ պետրոսեան, Գալուստ մելքոնեան, Արսէն թորոսեան, կարապետ մաթոսեան, որոնք կը գտնուին ֆրանսա, իմացնել Տրդատ Սողոմոնեանի, Rue St. Martin d'Hérés, Chemin de la Pleine. Grenoble, Isère.

# ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Յունուար 17ին MUTUALITÉի սրահին մէջ կը կազմակերպէ գեղարուեստական հանդէս մը



Պ. Գրիգոր Գօյունեան, եւ զաւակները՝ Պ. Պ. Սանասար, Գուրգէն եւ Օրիորդ Էլմաս, Մատաթեան, Աբովեան, Փաստրմաճեան, Այճեան, Հանէսեան, Համամճեան, Աթոռակալեան, Փամպուքճեան, Ինճիճեան, Իփէքճեան եւ Ըրկանեան ընտանիքները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի կնոջ, մօր եւ ազգականուհիին՝

### ՏԻԿԻՆ ՄԱՐԻ ԳՕՅՈՒՆԵԱՆԻ

(ծնեալ Աթոռակալեան, 21 յունուար 1880ին, կարին)

դառնաղէտ մահը:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 1.30ին իրենց բնակարանին մէջ 27 Bld. Albert 1er, Nogeant s)Marne, Seine:

Շոգեկառք Gare de l'Estէն, հանրակառք թիւ 114, 19, 120 Porte Vincennesէն:



IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Օտար գործաւորները.— *Անգործութիւնը թեթեւցնելու համար Սէն-Ինֆէրիէօրի նահանգապետը, քաղաքապետներուն յիշեցուց թէ համաձայն 1898 յունուար 10ի հրամանագրին, պետութեան հաշուոյն կնքուած պայմանագրութեանց մէջ պէտք է մտցնեն յօդուած մը, որով յանձնառուն պէտք է ճշդէ իր բանեցուցած օտար գործաւորներուն թիւը։ Նահանգապետը թելադրած է նաեւ որ կարելի եղածին չափ քիչ սահմանեն օտարականներու թիւը, այս պայմանագրութեան մէջ, համաձայն կատարուելիք աշխատանքներուն։*

Քաղաքական ոճիր մը Թիֆլիսի մէջ.— *Սուրիոյ մէջ քաղաքական յանցանքով դատապարտուած անծանօթ անձ մը, որ անցեալները Հալէպի բանտէն փախչելով Թիֆլիս ապաստանած էր, անծանօթի մը կողմէ սպաննուած եւ դիակը դարձեալ սուրիական հող փոխադրուած է։ Կը կարծուի թէ ոճրագործը քաղաքական կուսակցութեան մը կը պատկանի։*

Երկու ամիսէն տագնապը կը վերջանայ, *ըսած է Անգլիոյ Պետական Դրամատան Տնօրէնը, տեսակցութեան մը ընթացքին, զոր ունեցած է Լոնտոնի մէջ, Յունաստանի Պետական Դրամատան Տնօրէնին հետ։ Անգլիացիին այս կարծիքը, Յոյնը իր կառավարութեան հաղորդած է Աթէնք, հեռաձայնով։*

Ռուսիա ջուր պիտի խմցնէ.— *Ռուսիա որոշած է հանքային ջուր խմցնել աշխարհի, կազմակերպելով ջուրի վաճառամարտ մը եւ այս նպատակով ալ, նորոգելու վրայ է արհեստական հանքային ջուրի Լէնինկրատի գործարանը։ Այս գործարանը որ բարգաւաճ վիճակ մը ունէր պատերազմէն առաջ, լքուած էր յեղափոխութենէն ի վեր։ Յունուար 1էն սկսեալ պիտի սկսի բանիլ։*

*Կը նախատեսուի որ 1932ի ընթացքին, պիտի կրնայ ծախու հանել 4 միլիոն սրուակ զանազան հանքային ջուրեր, Պարլսպատի, Մարիէնպատի, Վիշիի։ Եանոսի ջուրեր եւլն։*



## Թատերական ներկայացում Մարսէյլի մէջ

*Ագշէհիրի Հայր. Միութեանկողմէ, ի նպաստ անգործ բազմանդամ ընտանիքներու, ղեկավարութեամբ դերասան Պ. Ղազէրեանի։*

*Այս Կիր. իրիկուն ժամը 8.30ին 84 Րիւ Շափ, Սալօն Շափի մէջ*

## ՏՕՆԱԾԱՌ 1932

Ա. Ե. Հ. Կ. Խաչի կըընոպլի մասնաճիւղին կողմէ։ Այս կիրակի ժամը 1.30ին Քռուա Ռուժի Սալ տը ֆէթի ընդարձակ սրահին մէջ։ Ճոխ յայտագիր։

Մուտքը 3 ֆրանք։

## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

*Մարսէյլի Քրիստափոր ենթակոմիտէի ընկերական ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Բացակաները նկատի պիտի առնուին։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— *Կը փնտռուին Խարբերդի Աշուան գիւղէն Արամ եւ Տաճատ Յակոբեանները, իրենց մօր անուն՝ Սարա, հօր անուն՝ Մանուկ։ Տարագրութեան միջոցին մայրերնին մեռած է եւ իրենք մնացած են Հալէպի եւ Ուրֆայի շրջանակին մէջ գտնուող Սաւրուճ գիւղը։*

*Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իրենց հօրեղբօր Պ. Յակոբեանի,* 14 Rue Ortolan, Paris։ *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք եւ մէկ տարեկան «Յառաջ» նուէր։*

*Կը խնդրուի սուրիահայ թերթերէն արտատպել։*

— Իստէլիի Հայր. Միութիւնը կը փնտռէ Աբինէր Սարգիսեան, Աղէկ Պետրոսեան, Գալուստ Մելքոնեան, Արսէն Թորոսեան, Կարապետ Մաթոսեան, որոնք կը գտնուին Ֆրանսա։ Իմացնել Տրդատ Սողոմոնեանի, Rue St. Martin d'Hérés, Chemin de la Pleine. Grenoble։ Isère.

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Նիս, Ս. Յ.— 140։*
*Մարսէյլ, Հ. Ժ.— 70։*
*Շաս, Պ. Ա.— 25։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Գ. Գոյունեան եւ զաւակունք, եւ ազգականները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին Տիկին ՄԱՐԻ ԳՈՅՈՒՆԵԱՆԻ մահուան առթիւ։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Յակոբ Խաչմանեան եւ զաւակունք եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՈՎՍԱՆՆԱ ԽԱՇՄԱՆԵԱՆԻ մահուան առթիւ։*

**ԵՓՐԱՏ** *նուագախումբը կը ստանձնէ նուագել հանդէսներու, հարսանիքներու, եւայլնի մէջ։ Կը տրամադրէ նաեւ 25—30 հոգինոց նուագախումբ։ Մանրամասնութեանց համար դիմել Տ. Օնոսեանի,* 15 Rue du Pourtour, Clamart, Seine։

*Երեկոները ժամը 8ին մասնաւոր դասընթացք, սոլֆէժի, ջութակի, ֆլիւթի եւ պանժօի։*

Միութեան տոմսակները ունեցողներէ կը խնդրուի վերադարձնել մինչեւ յունուարի վերջը։




IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN






Տիկ. ՍՈՒՐԱԲԵԱՆ «ԱՍԻԱ» դերին մէջ

փոնի դեսպանը, այս կերպով պատերազմ յառաջ բերելու համար Ճափոնի եւ Ռուսիոյ միջեւ։ Այս անձը, երկար տարիներէ ի վեր կապուած էր բոլշեւիկեան պաշտօնատարի մը, որուն իբր թէ յայտնած է իր ծրագիրը, — Ճափոնի դեսպանը սպաննելով՝ պատերազմի դուռ բանալ երկու երկիրներուն միջեւ։ Սակայն պաշտօնատարը այս խօսակցութիւնը յայտնած է Կէփլէուին, որուն վրայ խորհրդ. արտաքին գործավարութիւնը պահանջած է որ չեխօսլովաքդիւանագէտը ետ կը կանչուի։ Ցիշ. եալը այս օրերս կը սպասուի Փրակա, եւ անշուշտ, իր բացատրութիւններով լոյս պիտի սփռէ այն խորհրդաւոր «դաւ»ին վրայ։

Ճափոնի կառավարութիւնը, կ'ըսուի թէ որեւէ դիւանագիտական պահանջ չպիտի ներկայացնէ այս «դաւադրութեան» մասին։

Այս գործը մասնաւոր հետաքրքրութիւն մը արթնցուցած է Գերմանիոյ մէջ։ Թերթերը երկարօրէն կը զբաղին անով եւ «Ֆօսիշէ Ցայթունկ» կը գրէ թէ երբ Կէփէուն ուզէ օտար անձնաւորութիւն մը ճամբել, զայն կը քաշէ վարկաբեկիչ եւ վտանգաւոր գործի մը մէջ, եւ այս է որ պատահած է Չէխօսլավաք դիւանագէտին։

## Հնգամեակը 1932ին

Խորհրդ. Միութեան կեդր. Գործ. կոմիտէի նիստերուն փակման առթիւ, գործավարներու խորհուրդին նախագահը, ճառով մը պարզեց 1932ի ծրագիրը։ Մոլոթով կարդաց ցանկը այն գործարաններուն, որոնք պիտի բացուին 1932ին, մետաղագործական կարեւոր գործարաններ, մեքենական շինութեանց գործարան, խողովակի, երկաթուղային նիւթեղէնի եւայլ գործարաններ ու ելեկտրական կայան մը։

Գործաւորներու ուտեստը բարելաւելու համար, 92 նոր ձեռնարկներ պիտի սկսին աշխատիլ այս տարի։

1932ի ծրագրին համար, յատկացուած է 10,700 միլիոն ռուբլի ճարտարարուեստին, 4360 միլիոն երկրագործութեան, 3330 միլիոն փոխադրութեանց, 2892 միլիոն բնակարաններու կառուցման, 4200 միլիոն կրթութեան եւ հանրային առողջապահութեան եւայլն։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

Լա Հէ՞յ թէ Լօզան.— Անգլիա եւ Ֆրանսա համաձայնած են Լա Հէյի եւ յունուար 18ի վրայ, գումարելու համար Հատուցման Խորհրժաժողովը։ Սակայն Ժընեւեան շրջանակները մեծ ջանքեր կը թափեն Խորհրդաժողովը գումարել տալու համար Լօզանի մէջ։

Արկածահար դեսպան մը.— Պերլինի ռուսական դեսպանը երբ իր կնոջ հետ, տօնական արձակուրդներու առթիւ ինքնաշարժով կ'երթար դէպի Հարց, արկած մը անցուց։ Ճամբան սառած ըլլալով, ինքնաշարժը սահեցաւ ու ինքն իր վրայ դարձաւ։ Դեսպանը եւ իրեն ընկերացող կին մը վիրաւորուեցան ապակիի կտորներէն. իսկ դեսպանուհիին բազուկը ճռմուեցաւ։

Ձերբակալուած եւ պատժուած Հնդիկներ.— Հնդկաստանի հիւսիս-արեւմտեան շրջանին մէջ, պատահած խռովութեանց հետեւանքով, կառավարութիւնը ձերբակալած է 763 հոգի եւ զանազան պատիժներու ենթարկած է 194 հոգի։

Չին եւ ճափոն դէմ առ դէմ.— Շանկայէն տրուած լուրի մը համաձայն, 200.000ի չափ չինացի պատերազմական քուրմեր տրամադրութիւն յայտնած են բանակ կազմելու եւ ենթարկուելու Նանքինի կառավարութեան հրամանին, կռուելու համար ճափոնական ուժերուն դէմ։

Բոլշեւիկեան գործադիրը.— Երկուշաբթի օր վերջացան համայնավար Կեդր. Գործադիրի նիստերը, որոնք տեղի կ'ունենային Մոսկուայի մէջ։ Նախագահը Փէթրովսկի ամփոփեց աշխատանքները, եւ իր փակման ճառին մասին, ըստ ընկալեալ սովորութեան, յարձակում մը փորձեց ընդդէմ դրամատիրական կառավարութեանց, որոնք անընդհատ դաւեր կը սարքեն Ռուսիոյ դէմ։



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

Մարսէյլի Քրիստափոր ենթակոմիտէի ընկերական ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Բացակաները նկատի պիտի առնուին։

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լուառի կոմիտէն, «Հ. Յ. Դ. Օր»ուան առթիւ։ Այս Շաբաթ իրիկուն, ընկ. Գէորգ Բէօշկէրեանի սրճարանը, Ռօան։

կը նախագահէ՝ ընկ. Ս. ՏԷՐԷՃԵԱՆ
կը խօսի՝ ընկ. Մ. ԹՈՐՈՍԵԱՆ

Գեղարուեստական բաժին՝ ընկերներ Ղազար Չաքրճեանի, Խորէն Յովհաննէսեանի եւ Ղ. Յակոբեանի կողմէ։

## Թատերական ներկայացում Մարսէյլի մէջ

Ազգէհերի Հայր. Միութեանկողմէ, ի նպաստ անգործ բազմանդամ ընտանիքներու, ղեկավարութեամբ դերասան Պ. Ղազէրեանի։ Այս Կիր. իրիկուն ժամը 8.30ին 84 Րիւ Շափ, Սալօն Շափի մէջ



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Լէ Վան, Թ. Պ.— 70։
Փէէրֆէօ, Վարդ.— 35։
Մարսէյլ, Խ. Ն.— 70։
Մարսէյլ, Գործ.— 1396։ Կարգադրեցինք։
Ըընաժ, Վ. Խ.— 292։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Սկաուտական յանձնախումբի անդամները եւ Սկաուտական առաջնորդական կազմը խառն ժողովի կը հրաւիրուին այս Ուրբաթ ժամը 6ին Bar de la Posteի սրահը։ Կարեւոր օրակարգ։ Բացակայողները նկատի պիտի առնուին։

## ՏՕՆԱԾԱՌ 1932

Ա. Ե. Հ. Կ. խաչի կրընոպլի մասնաճիւղին կողմէ։ Այս կիրակի ժամը 1.30ին Քռուա Ռուժի Սալ տը Ֆէթի ընդարձակ սրահին մէջ։ Ճոխ յայտագիր։

Մուտքը 3 ֆրանք։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Խարբերդի Աշուան գիւղէն Արամ եւ Տաճատ Յակոբեանները, իրենց մօր անուն՝ Սարա, հօր անուն՝ Մանուկ։ Տարագրութեան միջոցին մայրերնին մեռած է եւ իրենք մնացած են Հալէպի եւ Ուրֆայի շրջանակին մէջ գտնուող Սուրուճ գիւղը։

Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իրենց հօրեղբօր Պ. Յակոբեանի, 14 Rue Ortolan, Paris։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք եւ մէկ տարեկան «Յառաջ» նուէր։ Կը խնդրուի սուրիահայ թերթերէն արտատպել։

— Իսպէյիլի Հայր. Միութիւնը կը փնտռէ Աբինէր Սարգիսեան, Աղէկ Պետրոսեան, Գալուստ Մելքոնեան, Արսէն Թորոսեան, Կարապետ Մաթոսեան, որոնք կը գտնուին Ֆրանսա, իմացնել Տրդատ Սողոմոնեանի, Rue St. Martin d'Hérés, Chemin de la Pleine. Grenoble, Isère.

ԵՓՐԱՏ նուագախումբը կը ստանձնէ նուագել հանդէսներու, հարսանիքներու, եւայլնի մէջ։ Կը տրամադրէ նաեւ 25—30 հոգինոց նուագախումբ։ Մանրամասնութեանց համար դիմել Տ. Օնոսեանի, 15 Rue du Pourtour, Clamart, Seine։ Երեկոները ժամը 8էն մասնաւոր դասընթացք, սոլֆէժի, ջութակի, ֆլիւթի եւ պանժօի։

Միութեան տոմսակները ունեցողներէ կը խնդրուի վերադարձնել մինչեւ յունուարի վերջը։























IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

